### Ա. Ձ Դ

Մայիս 28ի տօնակատարութեան առթիւ Հրապարակ հանուած վիճակահանութեան տոմսերու չահող թիւերը կրնան դիմել Մշակոյթի տունը, 17 Րիւ Պլէօ, Տիկին Գարաինէին, ստանալու համար իրենց նուէրները:

ԿԱՐԳԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Օդափոխութեան կայանի առաջին խումբը կը մեկնի Երկուշաբթի Յուլիս չորսին:

Կառ մը Լիոն, պտնուիլ ժամը 22ին դուրսի Քուր տը լ'Օռլօժին տակը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէսինէն Պերճ, Եդուարդ եւ Յասմիկ Մարտիրոսեան, Տէր եւ Տիկին Ներսէս Թութալեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ե. Նազարեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Մաթէոս եւ Յովհաննէս Նազարեան (Ամերիկա), իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց, որոնք ծաղկեպսակներով եւ անձամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի հօր եւ քրոջ որդւոյն Մկրտիչ Մարտիրոսեանի մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 17 Յունիսին: Շնորհակալութիւն նոյնպէս Տէսինահայոթեան, որ իր նուիրատուութեամբ օժանդակեց հանդուցեալի դամբարանի շինութեան: Այս առթիւ Տէր եւ Տիկին Թութալեան հինգական Ն. Ֆ. կը նուիրեն Հ. Յ. Դ. Տէսինի կոմիտէին եւ Խարբերդի Հայր. Միութեան:

×

Փարիզի եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները իր կրթ. ձեռնարկներուն համար.— Տօքթ. Պէօյիւքեան յիսուն Ն. Ֆ. իր Թոռնիկին մկրտութեան առթիւ, Պ. Գրիգորեան Մինաս 16 Ն. Ֆ. Պաննէօ Քաչանի դպրոցի հանդէսին առթիւ:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

### Ս Ե Ւ Ր

### 1960-1961

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ:

ԲԱՑՈՒԱԾ են նաեւ Պաքալօրէայի երկրորդ մասին երկու նոր դասարանները.—

Ա) Տարրական Թուաբանութիւն

Mathématiques Elémentaires

Բ) Փորձառական Գիտութիւններ

Sciences Expérimentales

Պայմաններուն համար դիմել՝

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél.: OBS. 18-28

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻՆ

Տիկին Ա. Մալաքեան Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Կեդր. վարչութեան կը նուիրէ յիսուն Ն. Ֆ. օդափ. կայանին ի նպաստ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հոկտեմբեր 9ին Թարգմանչաց տօնը, Սորպոնի մէջ:

## ՎԱՐՁՈՒ ԵՆ

Մարսէյլի մէջ, ամառուան համար, երկու մեծ կահաւորուած յարկաբաժիններ, իւրաքանչիւրը՝ 7-8 սենեակ: Մատչելի գին, Յուլիս, Օգոստոս, մինչեւ Սեպտեմբեր 10:

Դիմել՝ Յ. ԱԼԹՈՒՆԵԱՆ

26, RUE MOUSTIER, MARSEILLE

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը:

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հաճին դիմել որեւէ թղթատարական գրասենեակ:

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տրամադրելի՝ հետեւեալ խորագիրով դեղին թուղթը.—

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION
(Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը:

Բացառաբար մեր խնդրանքը գործադրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փոփոխութեան ծախքն է՝ 2.50 Ն. Ֆ., կանխաւ վճարելի:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ:

Տեղի պիտի ունենայ Յուլիս 10ին, կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Կապիյոնի սրճարանին գեղատեսիլ պարտէզին մէջ: Գեղարուեստական բաժին:

Հայկական նուագ ու երգեր բարձրախօսով:

Ճոխ պիւֆէ մատչելի գիներով:

Կը հրաւիրուի Տէսինի եւ Լիոնի Հայութիւնը:

Կը խնդրուի չխաչաձեւել այս ձեռնարկը: Անձրեւի պարագային ապահով վայր:

## Prix Brémond

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Այս Երեքշաբթի իրիկուն ժամը 21ին
Սալ Տրպիւսի
252, Fbg. St. Honoré

Դասախօս՝ ՍԻՐԱՐՓԻ ՏԷՐ ՆԵՐՍԷՍԵԱՆ

Նիւթ՝ Նեսթըր Պիթթի հաւաքածոյին հայկական ձեռագիրները:

(Projections)

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Համա - Խարբերդ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին կողմէ: Այս Կիրակի Պ. Հայկազ Զուքուրեանի օդասուն եւ ընդարձակ ագարակին մէջ, Սէն - Լու Կրան - Փէն:

Գեղարուեստական ճոխ բաժին: Իր մասնակցութիւնը կը բերէ ԺԱԳ ՆԱԺԱՐ, ձայնասփիւռի եւ բեմերու արուեստագէտ: Երգ, արտասանութիւն եւ անակնկալներ:

Դերասան ԹՐԱԳՕՇ խնամեալ պատրաստութեամբ պիտի բեմադրէ «ԲԱԽՏԱՒՈՐ ԶՈՅԳԻ ՄԸ ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ» կամ «ՆՈՐ ՀԱՐՈՒՍՏԸ»:

ՌԱՏԻՕ ԱԼԳԱԶ իր նոր սալերով եւ գործիքներով հանդէսին վայրը պիտի աւելցնէ: Ճոխ պիւֆէ եւ համեղ չամփուրով խորոված, մատչելի գիներով:

Մուտքը ազատ է:

Հանդիսավայր երթալու համար Պուլվար Կարիպալտիէն առնել 15 եւ 18 թիւերը եւ իջնել Սէն -Լու, ֆրանսական եկեղեցիին քով:

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեւրանդի Իսկի խումբին եւ Ջաւարեան կոմիտէին կողմէ:

10 Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ իրիկուն, Մէօտոնի պաղ աղբիւրին մօտ:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ: ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ, ԽԱՂԵՐ, ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ: ՊԻՒՖԷ:

### ԵՂԱՆԱԿԻ ԼԱՒԱԳՈՅՆ ԴԱՇՏԱ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Համաչարսանճաքի Հայր. Միութեան:

(Մարսէյլ - Պօմոն), այս Կիրակի ամբողջ օրը Կրօթ Մոնարի ճաշարանը, Թրուա - Լիւք գովասուն զալարազարդ պարտէզին մէջ:

Կը խօսի Մ. ԹԱՇՃԵԱՆ

Առաւօտուն պուլի մրցում:

Պուլ ունեցողներէն կը խնդրուի միասին բերել:

Գեղարուեստական խնամուած ու ճոխ բաժին.— երգ, նուագ, արտասանութիւն, անակնկալներ եւն.:

Տիկին Սոնա Թորոսեանի ղեկավարութեամբ զաւեշտ մը:

ՌԱՏԻՕ ԱԼՔԱԶ

Հայկական, եւրոպական պարեր:

Ճոխ պիւֆէ, չամփուրով խորոված:

Մուտքը ազատ է:

ԾԱՆՕԹ.— Առնել 7 թիւ օթօպիւսը եւ իջնել վերջաւորութեան, Շէ լա Մառէն, Ռութ տէ գ'Օլիվ:

### ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՏԱՐԵՎԵՐՋԻ ՊՏՈՅՏԸ

ԿԻՐԱԿԻ, ՅՈՒԼԻՍ 10

Դէպի ՏՕՎԻԼ եւ շրջակայքը

Օթօքարը կը մեկնի Սոլ. Տունէն (32 Րիւ տը Թրէվիզ) ժամը ճիշդ 7ին:

Պտոյտին մասնակցիլ փափաքողները պէտք է նախապէս արձանագրուին երգչախումբի վարչութեան կամ Օր. Զաքրէճեանի մօտ (78 Րիւ Լաֆայէթ, Փարիզ (9), հեռաձայնով

TRI. 77-27 poste 62

Ծանապարհածախք 15 Ն. Ֆ.:

Ամէն ոք իր ուտելիքը կը հոգայ:

## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

10 ՅՈՒԼԻՍ, ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 11 - 21, ԼԸ ԲԷՔԻ ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ:

Ի նպաստ բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն:

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին:

Բացօթեայ ճաշ ժամը 13ին, եւ ընթրիք ժամը 19ին:

Ճոխ պիւֆէ մատչելի գիներով:

Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր:

Հաղորդակց. միջոցներ.— Շոգեկառք Սէն Լազարէն, Սէն - Ժէրմէն - անլէյի կայարանը (ոչ թէ Լը Բէքի):

Օթօպիւս 258 Փօն տը Նէօյի, իջնել երմիթաժի կայքը:

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐ

ՕԳՈՍՏՈՍ 1 – 31

**Hotel Splendid - Laffrey (Isére)**

1000 մեթր բարձրութեան վրայ, գեղատեսիլ լճի մը ափին, բոլոր յարմարութիւններով օժտուած մեծ պանդոկի մը մէջ: Խաղաղաւէտ եւ լռանք: Խմբական պտոյտներ, դասախօսութիւններ եւ գեղարուեստական երեկոյթներ:

ՕՐԱԿԱՆ 8·50 Ն· Ֆ·

Արձանագրութեանց համար դիմել Շաբաթ օրերը՝ 17 Րիւ Պլէօ, կէսօրէ վերջ ժամը 2 – 6:

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԶԵԿՈՒՑՈՒՄ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԵԴՐ· ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

**ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆԻ**

կողմէ Ամերիկահայ գաղութին մասին:

Շաբաթ, Յուլիս 16, ժամը 21ին Մշակոյթի Տան Սողոմոն Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ:

Կը հրաւիրուին ընկերներ, ընկերուհիներ եւ համակիրներ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Տէսինի մէջ «Հերոսներու Օր»ը կը տօնուի, նախաձեռնութեամբ Հ· Յ· Դ· Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ: Յուլիս 31ին, Կապլիյեօն արձարանի ծառախիտ պարտէզին մէջ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի չքեղ սրահներուն մէջ:

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ:

## ՆՈՒԷՐ

Տիկին Քալըպճեան Պ· Ցովակիմեանի մահուան առթիւ 50 Ն· Ֆ· կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պ· Մարգար Ազամեան փոխան ծաղկեպսակի Այրի Տիկին Տատուրեանի մահուան առթիւ տասնական Ն· Ֆ· կը նուիրէ Մոնմորանսիի Հանգստեան տան եւ Սողոմոն Թէհլիրեան սրահին:

## ՅԻՇԱՏԱԿԻ ՑԵՐԵԿՈՅԹ ԱՆՄԱՀ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ*

*ՆԻՍԻ ՄԷՋ*

17 Յուլիս, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3·30ին, Քաֆէ Լիոնի վերնայարկը (Ավընիւ տը լա Վիքթուար):

Կը նախագահէ ՇԱՀԱՆ ԶՕՏԵԱՆ:

Կը խօսի ԱԶԱՏ ԶԱՐԴԱՐԵԱՆ:

Գեղարուեստական պատշաճ բաժին:

Մուտքը ազատ է:

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

1960 – 1961 տարեշրջանի արձանագրութիւնները բացուած են: Արձանագրութեան համար դիմել վարժարան, 1 Պուլ· տիւ Նօր, Լը Րէնսի:

ՀԵՌԱՁԱՅՆ 927 – 01,72

## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը:

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հանրին դիմել որեւէ թղթատարական գրասենեակ:

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տրամադրելի՝ հետեւեալ խորագիրով դեղին թուղթը·—

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION (Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը:

Բացառաբար մեր խնդրանքը գործադրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փոփոխութեան ծախքն է՝ 2·50 Ն· Ֆ·, կանխաւ վճարելի:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

10 ՅՈՒԼԻՍ, ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 11 – 21, ԼԸ ԲԷՔԻ ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ:

Ի նպաստ բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն:

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին:

Բացօթեայ ճաշ ժամը 13ին, եւ ընթրիք ժամը 19ին:

Ծոխ պիւֆէ մատչելի գիններով:

Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր:

Հաղորդակց· միջոցներ·— Շոգեկառք կառ Սէն Լազարէն, Սէն – Ժէրմէն – անլէյի կայարանը (ոչ թէ Լը Բէքի):

Օթօպիւս 258 Փօն տը Նէօյի, իջնել երմիթաժի կայքը:

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ֆ· Կ· Խաչի Լիոնի մասնաճիւղին կողմէ:

17 Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Կապլիյոնի արձարանին գեղատեսիլ պարտէզին մէջ:

Գեղարուեստական բաժին·— Հայկական նուագ եւ երգեր բարձրախօսով:

Ծոխ պիւֆէ մատչելի գիններով:

Կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի հայութիւնը:

Անձրեւի պարագային ապահով վայր:

## ՇԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐՈՎ

Միայն հայրենակիցներու համար, բընակարաններու ներքին աշխատանքներու համար եթէ կ'ուզէք ամէն ձեւով գոհ մընալ դիմեցէք՝

**Djamdjian**

67, Rue de Vaugirard - Paris 15e

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն· Ֆր· | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն· Ֆր· | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն· Ֆր· | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն· Ֆր· | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն· Ֆր· | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն· Ֆր· | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն· Ֆր· | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն· Ֆր· | » » » |
| «ԾԱԽՈՒԻ Է» | 20 Ն· Ֆր· | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՏԱՐԵՎԵՐՋԻ ՊՏՈՅՏԸ

ԿԻՐԱԿԻ, ՅՈՒԼԻՍ 10

Դէպի ՏՕՎԻԼ եւ շրջակայքը

Օթօքարը կը մեկնի Ազգ· Տունէն (32 Րիւ տը Թրէվիզ) ժամը ճիշդ 7ին:

Պտոյտին մասնակցիլ փափաքողները պէտք է նախապէս արձանագրուին երգչախումբի վարչութեան կամ Օր· Զահրէճեանի մօտ (78 Րիւ Լաֆայէթ, Փարիզ (9), հեռաձայնով

TRI. 77-27 poste 62

Ծանապարհածախք 15 Ն· Ֆ·:

Ամէն ոք իր ուտելիքը կը հոգայ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ·— Ֆ· Կ· Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Պ· Յովսէփ Խաչէրեանէ 30 Ն· Ֆ· եւ ընկերուհի Պէրպէրեանէ քսան Ն· Ֆ·, իր Ամերիկա այցելութեան առթիւ:

×

ԼԻՈՆ·— Ֆ· Կ· Խաչի Լիոնի մասնաճիւղը Հայ Մշակոյթի Տան «Սողոմոն Թէհլիրեան» սրահին կը նուիրէ հարիւր Ն· Ֆ·, եւ յիսուն Ն· Ֆ· «Յառաջ»ի բարգաւաճման համար:

## ՃՇԴՈՒՄ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբի անդամ, Պ· Մարտիրոս Մուրատեան, Լիոնի եկեղեցւոյ շինութեան նուիրած է ոչ թէ հինգ հարիւր Ն· Ֆ·, այլ 1000 Ն· Ֆ·:

Լիոնի եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան·—

Ոմն հարիւր Ն· Ֆ·, Պ· Աստուր Յովհաննէսեանէ փոխան ծաղկեպսակի տասը Ն· Ֆ·, հանգուցեալ Մկրտիչ Մարտիրոսեանի մահուան առթիւ: Տէր եւ Տիկին Եէմէնիճեանի ամուսնութեան առթիւ իրենց կնքահայր Պ· Նշան Պետրոսեանէ 40 Ն· Ֆ·:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ:

ԲԱՑՈՒԱԾ են նաեւ Պաքալօրէայի երկրորդ մասին երկու նոր դասարանները—

Ա) Տարրական Չափագիտութիւն

Mathématiques Elémentaires

Բ) Փորձառական Գիտութիւններ

Sciences Expérimentales

Պայմաններուն համար դիմել՝

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT

26, Rue Troyon, SEVRES (S. et O.)

Tél. : OBS. 18-28

ՖՈՒԹՊՈԼԻ Եւրոպայի բաժակին տէ-րացաւ, Կիրակի օր Խորհրդ. Միութիւնը մէկի դէմ երկու կէտով պարտութեան մատնելով Եուկոսլաւիան : Այս վերջինը 0ի դէմ 1ով յաղթած էր առաջին կիսա-խաղին, բայց երկրորդին՝ 1 – 1 հաւասար մնացին : Երկու քառորդական ժամը եր-կարաձգումով Խորհրդ. Միութիւնը յաղ-թեց :

ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԸ հեծանիւով եղե-րական օր մը ապրեցաւ Կիրակի : Ֆրան-սացի ախոյեան Ռօժէ Ռիվիէռ փոսի մը մէջ ինկած է եւ հազիւ ազատած՝ մահէ :



## ՅԻՇԱՏԱԿԻ ՑԵՐԵԿՈՅԹ ԱՆՄԱՀ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ*

*ՆԻՍԻ ՄԷՋ*

17 Յուլիս, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3.30ին, Քաֆէ Լիոնի վերնայարկը (*Ավընիւ տը լա Վիքթուար*) :

*Կը նախագահէ ՇԱՀԱՆ ՋՕՏԵԱՆ* :

*Կը խօսի ԱԶԱՏ ՁԱՐԴԱՐԵԱՆ* :

Գեղարուեստական պատշաճ բաժին :

*Մուտքը ազատ է* :

*ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ*

1960 – 1961 տարեշրջանի արձանագրու-թիւնները բացուած են : Արձանագրու-թեան համար դիմել վարժարան, 1 Պուլ. տիւ Նոր, Լը Ռէնսի :

*ՀԵՌԱՁԱՅՆ* 927 – 01,72



## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ա-միսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշ-տօնեաներուն համար՝ որոնց կարգա-բացակայութիւնը զգալի կերպով կը դժ-ուարացնէ մնացողներուն առօրեայ աշ-խատանքը :

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդնե-րէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հանին դիմել որեւէ թղթատարական գր-րասենեակ :

Ընթացիկ պարզ եւ ձրի գործո-ղութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տը-րամադրելի՝ հետեւեալ խորագիրով դե-ղին թուղթը . —

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION (Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժա-նորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը :

Բացառաբար մեր խնդրանքը գործա-դրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փո-փոխութեան ծախքն է՝ 2.50 Ն. Ֆ., կանխաւ վճարելի :

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԶԵԿՈՒՑՈՒՄ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆԻ

*կողմէ* Ամերիկահայ գաղութին մասին :

*Շաբաթ, Յուլիս 16, ժամը 21ին Մշա-կոյթի Տան Սողոմոն Թէհլիրեան սրահը,* 17 *Րիւ Պլէօ* :

*Կը հրաւիրուին ընկերներ, ընկերուհի-ներ եւ համակիրներ* :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Տէր եւ Տիկին Խաչիկ Կիւլպոլեան Օն-նիկ Իսկէնտէրեանի մահուան առթիւ փո-խան ծաղկեպսակի 25ական Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի տան Շ. Միսաք-եան եւ Ս. Թէհլիրեան սրահներուն եւ* 50 Ն. Ֆ. *«Հայ – Բոյժ»ին* : (*Ստանալ «Յառաջ»էն*) :

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղին կողմէ* :

17 *Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Կապիյոնի սրճարանին զեղատեսիլ պարտէզին մէջ* :

*Գեղարուեստական բաժին .— Հայկա-կան նուագ եւ երգեր բարձրախօսով* :

*Ձուկ պիւֆէ մատչելի գիներով* :

*Կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի հա-յութիւնը* :

*Անձրեւի պարագային ապահով վայր* :



## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐ

ՕԳՈՍՏՈՍ 1 – 31

**Hotel Splendid - Laffrey (Isére)**

1000 *մեթր բարձրութեան վրայ, գեղա-տեսիլ լիճի մը ափին, բոլոր յարմարու-թիւններով օժտուած մեծ պանդոկի մը մէջ : Խաղաղաշտ եւ լողանք : Խմբական պտոյտներ, դասախօսութիւններ եւ գե-ղարուեստական երեկոյթներ* :

ՕՐԱԿԱՆ 8.50 Ն. Ֆ.

*Արձանագրութեանց համար դիմել Շա-բաթ օրերը՝* 17 *Րիւ Պլէօ, կէսօրէ վերջ ժամը* 2 – 6 :

*ՆԻՍԻ խումբին համար արձանագրուիլ Օր. Շաքէ Գաբրիէլեանի մօտ,* 19 Պուլվ. Մանեան, Նիս :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Պուքրէշէն Աղաւնի Քեփէճեան (ծնեալ Պէրպէրեան) կը փնտռէ իր եղբայրը՝ Եղուարդ Պէրպէրեան, ծնած Քոսթանցա (Ռումանիա), հօրը անունը՝ Միհրան, մօրը՝ Արշալուհի : Գրել՝*

S. KABADIAN

8, Rue St. Hyacinthe - Paris 1er

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տիկին Վահան Փաստըրմաճեան, Օր. Թամար Փաստըրմաճեան, Տէր եւ Տիկին Կարօ Փաստըրմաճեան եւ աղջիկը եւ բո-լոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գը-րաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղ-կեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին՝*

*ՎԱՀԱՆ ՓԱՍՏԸՐՄԱՃԵԱՆԻ*

*մահուան առթիւ* :

## ՆՈՒԷՐՆԵՐ

*Իսիէն ընկեր Կարապետ Թօփալեան շնորհակալութիւն կը յայտնէ Լիոնահա-յութեան եւ մասնաւորաբար Հարէքեան, Միսաք Միրզէ եւ Կէնճեան ընտանիքնե-րուն, Տիկին Թագուհիին եւ տեղւոյն հո-գեւոր հովիւին, իր կնոջ հիւանդութեան ընթացքին անոնց տարած հոգատարու-թեան համար եւ այս առթիւ կը նուիրէ երեսուն Ն. Ֆ. Սողոմոն Թէհլիրեան սրա-հին, երեսուն Ն. Ֆ. Կապոյտ Խաչի օգ-նութեան կայանին, երեսուն Ն. Ֆ. Լիոնի եկեղեցաշէն յանձնախումբին եւ 20 Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման : (Ստա-նալ «Յառաջ»էն) :*

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

*Տէսինի մէջ «Հերոսներու Օր»ը կը տօն-ուի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Տէ-սինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ : Յուլիս 31ին, Կապիյեօն սրճարանի ծա-ռախիտ պարտէզին մէջ :*

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

**1960 - 1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐ-ՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ :

*ԲԱՑՈՒԱԾ են նաեւ Պաքալօրէայի երկ-րորդ մասին երկու նոր դասարանները* —

Ա) Տարրական Զափագիտութիւն

Mathématiques Elémentaires

Բ) Փորձառական Գիտութիւններ

Sciences Expérimentales

*Պայմաններուն համար դիմել՝*

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT

26, Rue Troyon, SEVRES (S. et O.)

Tél. : OBS. 18-28

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմ-բեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առա-ւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքա-պետարանի շքեղ սրահներուն մէջ :*

*ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէ-սօրէ վերջ, Սորպոնի մէջ :*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Ղեւոնդ Թորոսեան, Կրընոպլը Ն. Ֆ.* 30

*Ոսկիան Յակոբեան, Կրընոպլը* 10

*Տիգրան Վարդանեան, Ժուի*
*ան – Ժոզաս* 15



## ՅԻՇԱՏԱԿԻ ՑԵՐԵԿՈՅԹ ԱՆՄԱՀ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ*

*ՆԻՍԻ ՄԷՋ*

17 Յուլիս, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3.30ին, Քաֆէ Լիոնի վերնայարկը (*Ավընիւ տը լա Վիքթուար*) :

*Կը նախագահէ ՇԱՀԱՆ ՋՕՏԵԱՆ :*

*Կը խօսի ԱԶԱՏ ՋԱՐԴԱՐԵԱՆ :*

Գեղարուեստական պատշաճ բաժին :

*Մուտքը ազատ է :*



## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը :

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հանեն դիմել որեւէ թղթատարական գրասենեակ :

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տպագրելի՝ հետեւեալ խորագիրով դեղին թուղթը . —

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION (Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը :

Բացառաբար մեր խնդրանքը գործադրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փոփոխութեան ծախքն է՝ 2.50 Ն. Ֆ., կանխաւ վճարելի :

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԶԵԿՈՒՅՈՒՄ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՍՏԱՔԵԱՆԻ

*Կողմէ* Ամերիկահայ գաղութին եւ գլխաւորաբար ՀՕՄ-ի մասին :

*Շաբաթ, Յուլիս 16, ժամը 21ին Մշակոյթի Տան Սողոմոն Թէհլիրեան սրահը,* 17 *Րիւ Պլէօ :*

*Կը հրաւիրուին ընկերներ, ընկերուհիներ եւ համակիրներ :*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Յ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղին կողմէ :*

17 *Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Կապիյոնի սրճարանին գեղատեսիլ պարտէզին մէջ :*

*Գեղարուեստական բաժին . — Հայկական նուագ եւ երգեր բարձրախօսով :*

*Ճոխ պիւֆէ մատչելի գիներով :*

*Կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի հայութիւնը :*

*Անձրեւի պարագային ապահով վայր :*

*Հանրակառքը կը մեկնի Կիշառ հրապարակէն ժամը 9ին :*



## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Անի կոմիտէի : Այս Կիրակի ամբողջ օրը էստրապլէնի ծանօթ դաշտը,* Թապուրէթ :

*Կը խօսի Ընկ. Մ. ՄԻՐՋԷ (Լիոնէն)*

*Գեղարուեստական բաժին, հաճելի մթնոլորտ, առատ կերուխում, մատչելի գիներով, չամփուրով խորոված :*

*Հայկական եւ եւրոպական պարեր, սիրով կը հրաւիրուի Վիէնի եւ շրջակայքի Հայութիւնը :*

*Օթօքարի ժամերը, առաւօտեան ժամը* 10.30*ին կայարանէն,* 11*ին,* 12.30*ին, կէսօրէ վերջ ժամը* 2.15*ին :*

*Վերադարձ ժամը 20ին :*

*Անձրեւի պարագային կը յետաձգուի :*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Տէսինի մէջ «Հերոսներու Օր»ը կը տօնուի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ : Յուլիս 31ին, Կապիյոն սրճարանի ծառախիտ պարտէզին մէջ :*



## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

*Վալանսէն Օր. Մաղաքեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Տիկին Մելքոնեանի (Մարսէյլ) :*

*Տէր եւ Տիկին Յակոբ Խաչատուրեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրեն Տէր եւ Տիկին Շիշմանեանի (Թեհրան) :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այս Ուրբաթ (Յուլիս 15) առաւօտ ժամը 11ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝*

*ՏԻԿԻՆ ԷԼԻԶԱ ԷՍՄԷՐԵԱՆ*

*(Ծնեալ Կիւմիւշկերտան, մեռած* 1960, *Յունուար 15ին) եւ իր ամուսնոյն՝*

*ՊՕՂՈՍ ԷՍՄԷՐԵԱՆԻ*

*(մեռած 15 Յունուար 1941) :*

*Եւ համայն Էսմէրեան եւ Կիւմիւշկերտան գերդաստաններու ննջեցեալներու յիշատակին :*

*Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները :*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Պուքրէշէն Աղաւնի Քեփէճեան (ծնեալ Պէրպէրեան) կը փնտռէ իր եղբայրը՝ Եդուարդ Պէրպէրեան, ծնած Քոսթանցա (Ռումանիա), հօրը անունը՝ Միհրան, մօրը՝ Արշակուհի : Գրել՝*

*« ՅԱՌԱՋ »ին*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է, Տէր եւ Տիկին Տիգրան Սահակեանէ, իրենց զաւկին Պ. Ռաֆիի ամուսնութեան ուրախ առիթով հարիւր Ն. Ֆ. ի նպաստ իր դրամարկղին :*

×

*Այրի Տիկին Գ. Յովհաննէսեան, Տէր եւ Տիկին Դաւիթ Յովհաննէսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Ճիզմէճեան եւ զաւակը եւ բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝*

*ԳԱՌՆԻԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ*

*մահուան առթիւ :*

×

*Այրի Տիկին Սրբուհի Իսքէնտէրեան եւ զաւակները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակներով եւ նուիրատուութիւններով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ Պ. Օննիկ Իսքէնտէրեանի կսկծալի մահուան առթիւ :*

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

**1960 - 1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ :

*ԲԱՑՈՒԱԾ են նաեւ* Պաքալօրէայի *երկրորդ մասին երկու նոր դասարանները —*

*Ա)* Տարրական Ձափագիտութիւն

Mathématiques Elémentaires

*Բ)* Փորձառական Գիտութիւններ

Sciences Expérimentales

*Պայմաններուն համար դիմել՝*

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինդերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ :*

*ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ :*

### *ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ*

1960 – 1961 տարեշրջանի արձանագրութիւնները բացուած են : Արձանագրութեան համար դիմել վարժարան, 1 Գոլտիւ Նօր, Լը Րէնսի :

*ՀԵՌԱՁԱՅՆ* 927 – 01,72



Imprimerie Spéciale du journal «Haratch»

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ
### ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ
### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ՝ ՅՈՒԼԻՍ 24ԻՆ

*Վալապրի անտառը։*
*Պատուոյ նախագահութեամբ Կառտանի քաղաքապետ՝ ՎԻՔԹՈՐ ՍԱԻԻՆԻ*
*Մանրամասնութիւնները յաջորդիւ ։*

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Նախաձեռնութեամբ Համաշխարհային Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղին ։*

Յուլիս 24ին, կիրակի առաւօտ ժամը 9էն մինչեւ երեկոյ ուշ ատեն, Տէսինի ժան Թորոսեանին Սեւան ճաշարանի զովասուն պարտէզին մէջ ։ 35 *Ավրնիւ ժան ժօրէս ։*
*Առատ կեր ու խում ։*
*Զովացուցիչ ըմպելիներ ։*
Շամփուրով *խորոված, գիւրամատչելի գիներով ։*
*Երգ, արտասանութիւն, պար, արեւելեան եւ եւրոպական նուագ, նոյնպէս Զարօանձայցիներու աւանդական պարը՝ Ալաչէն։ Երկսեռ խումբով ։*
*Հանդէսի հասոյթին նպատակն է օգնել Միութեան կարօտեալներուն եւ Միութեանս որդեգրած ուսանող սաներուն ։*
*ԾԱՆՕԹ.— Անձրեւի պարագային ապահովուած վայր։*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը ։

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հանին դիմել որեւէ թղթատարական գրասենեակ ։

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տրամադրելի՝ հետեւեալ խորագիրով դիմին թուղթը . —

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION (Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը ։

Բացառաբար մեր խնդրանքը գործադրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փոփոխութեան ծախքն է՝ 2·50 Ն. Ֆ., կանխաւ վճարելի ։

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Լիոնի «Մշակոյթի Տան» յանձնախումբին միջոցաւ.
*Տիկին Ժոզէֆին Ներկիզեանէ* 300 Ն. Ֆ., *Անդրանիկ Օպողեանէ յիսուն* Ն. Ֆ., *Մարտիրոս Մուրատեանէ յիսուն* Ն. Ֆ., *Ոզբ. Վահրամ Զանոյեանի յիշատակին իր բարեկամները՝ Ղազար Ղազարեան* 10 Ն. Ֆ., *Սահակ Կէնճեան տասը* Ն. Ֆ., *Մարտիկ Պետանեան, Զաքէոս Վարժապետեան, ու եղբայր Յակոբ Զանոյեան տասնական* Ն. Ֆ.։
*Գումար* 450 Ն. Ֆ.։
*Միհրան Կարապետեանէ, (Պրիւսէլ)* 30 Ն. Ֆ.։



Hotel Splendid - Laffrey (Isére) — ՕԳՈՍՏՈՍ 1 – 31

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐ

1000 *մեթր բարձրութեան վրայ, գեղատեսիլ լիճի մը ափին, բոլոր յարմարութիւններով օժտուած մեծ պանդոկի մը մէջ։ Խաղաղաւէտ եւ լողանք ։ Խմբական պտոյտներ, դասախօսութիւններ եւ գեղարուեստական երեկոյթներ ։*

ՕՐԱԿԱՆ 8·50 Ն. Ֆ.

*Արձանագրութեանց համար դիմել Շաբաթ օրերը՝* 17 Րիւ Պլէօ, *կէսօրէ վերջ ժամը* 2 – 6 ։

*ՆԻՍԻ խումբին համար արձանագրուիլ Ըր. Շաքէ Գաբրիէլեանի մօտ,* 19 Պուլվ. Մանեան, Նիս ։

ԳԱՒԱՌ, Լիոն.— *Պէրպէրեան Ժ.* 39, Rue Dunoir LYON 3e
ՏԷՍԻՆ.— *Լիւլէճեան,* 16, Rue Coli
ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— *Ժ. Փիլիկեան,* 8, Rue J. Vergnette
ՎԻԷՆ.— *Կարապետեան* Rue Mont Arnaud
ՄԱՐՍԷՅԼ.— *Գըլըճեան,* 18, Rue Thubanean

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

1960 – 1961 տարեշրջանի արձանագրութիւնները բացուած են ։ Արձանագրութեան համար դիմել վարժարան, 1 Պուլ. տիւ Նօր, Լը Րէնսի ։
ՀԵՌԱՁԱՅՆ 927 – 01,72



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինդերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ ։*

×

*ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ ։*

*«ՀԱՅ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ ՕՐԸ» ԽԱՆԱՍՈՐԻ տարեդարձի առթիւ։ Շաւիլի անտառին մէջ, Յուլիս 24, կիրակի օր։*

# ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

## ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ՝ ՅՈՒԼԻՍ 24ԻՆ

Վայրպրի անտառը :
Պատույ նախագահութեամբ Կառտանի քաղաքապետ՝ ՎԻՔԹՈՐ ՍԱՒԻՆԻ
Մանրամասնութիւնները յաջորդիւ :

ՄԱՐՍԷՅԼ քաղաքի օթօքարը կը մեկնի Կիրակի, առաւօտ ժամը 7·30ին, Փլաս տ'Էքսէն : Տոմսերը ապահովել ընկեր Քէօսէեան, Ֆօլծօ Րէքս, 2 րիւ Պէնար տիւ Պօռ :

Ծերիկեան՝ 13 րիւ տէ Տոմինիքէն :
Ընկ. Պետրոսեան՝ մսավաճառ, 20 րիւ տէ Փըթիթ Մարի :

Պօմոնի հանգիստականներէն կը խնդրուի արձանագրուիլ ընկերներ Նշան Դարբին-եանի, Սերժ Սարգիսեանի եւ Երուանդ Տէր Մեսրոպեանի մօտ :

×

Տէսինի մէջ «Հերոսներու Օր»ը կը տօնուի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ : Յուլիս 31ին, Կապիյեօն սրճարանի ծառախիտ պարտէզին մէջ :

## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

| | |
|---|---|
| Վալանսէն շարիտներէն մէկը՝ Ն. Ֆ. | 10 |
| Լիոնէն Ս. Կէնճեան | 10 |
| Փարիզէն Պ. Վ. Է. | 35 |

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը շնորհակալութիւն կը յայտնէ հետեւեալ հայրենակիցներուն՝ որոնք «Մայրերու տօն»ին առթիւ ի նպաստ իր հովանաւորած դպրոցին եղած հանգանակութեան բերին իրենց սիրայօժար մասնակցութիւնը :

Տէր եւ Տիկին Ալիքեան 12 Ն. Ֆ., Տիկիններ Տօղիկեան, Օնպաշեան, Մ. Պօյաճեան, Տէր եւ Տիկին Սինանեան, Զատիկեան, Իւլրիչ, Անտոնեան, Սիսլեան, Միքայէլեան, Բարախեան, Կիւմիւշեան, Ար. Թիւֆէնքճեան, Պ. Պ. Քէհեայեան, Ոսկրեան տասնական Ն. Ֆ. :

Տիկիններ Յովակիմեան, Յովհաննէսեան, Փ. Սիմոնեան, Յ. Գույումճեան, Մարգարեան, Մուրատեան, Ինճէեան, Մակարեան, Տէր եւ Տիկին Տէյիրմէնճեան, Աւագեան, Հ. Սիմոնեան, Տ. Սթամպուլեան, Արթինեան, Նիքօլա, Փունարճեան, Զիֆթճեան, Մանուկեան, Զաղացպանեան, Հ. Կօպալեան, Քէթէնճեան, Գ. Թիւֆէնքճեան, Ճէլալեան, Խաչիկեան, Տիպիտապեան, Թորոսեան, Տողրամաճեան, Կիւմշեան, Մարաշլեան, Նալպանտեան, Զատիկեան որդի, Ար. Ուզունեան, Կ. Կիւրիւնեան, Այվազեան, Արապեան, Ճերմակեան, Աւաեան, Մութաֆեան, Գասպիկեան, Խանճեան, Քէշիշեան հինգական Ն. Ֆ. :

(Շար.)

## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգուբացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը :

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հանին դիմել որեւէ թղթատարական գրասենեակ :

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տրամադրելի՝ հետեւեալ խորագիրով դեղին թուղթը . —

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION
(Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը :

Բացառաբար մեր խնդրանքը գործադրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փոփոխութեան ծախքն է՝ 2·50 Ն. Ֆ., կանխաւ վճարելի :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ ՕՐԸ

### ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ

Շաւիլի անտառին մէջ
(Գերեզմանատան մօտ)

Այս Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, հովանաւորութեամբ Փարիզի Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի, նախաձեռնութեամբ Շաւիլի Արդութեան խումբին :

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ. — Բարձրախօս, երգ, արտասանութիւն եւ պար :
Մատչելի պիւֆէ :

Առաւօտուն Շաւիլի հայ նորաշէն եկեղեցիին մէջ պատարագէն յետոյ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի, բոլոր հայ հերոսներու եւ մասնաւորապէս վրիժառու հայորդիին ողբացեալ՝

ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Յիշատակին

Անձրեւի պարագային ընկերահամակրան խնջոյք :

Հայ դպրոցի սրահին մէջ Րիւ տէ Թըրուա, Շանթիէ - Շաւիլ :

Տողեկառք Սէն Լազարէն, Օթօպիւս 171 Փոն տը Սէվր Շաւիլ, իջնել Փիւի Սան վէն :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ :

×

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ :

Imprimerie Spéciale du journal « Haratch »



### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

1960 - 1961 տարեշրջանի արձանագրութիւնները բացուած են : Արձանագրութեան համար դիմել վարժարան, 1 Պուլ. տիւ Նօր, Լը Րէնսի :

ՀԵՌԱՁԱՅՆ 927 - 01,72

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Պուքրէշէն Աղաւնի Քերփիճեան (ծնեալ Պէրպէրեան) կը փնտռէ իր եղբայրը՝ Եդուարդ Պէրպէրեան, ծնած Քոսթանցա (Ռումանիա), հօրը անունը՝ Միհրան, մօրը՝ Արշալուհի : Գրել՝
« ՅԱՌԱՋ »ին



### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տարօն - Տուրուբերանի Հայր. Միութիւնը կը հրաւիրէ բոլոր հայրենակիցներն ու բարեկամները որ ներկայ ըլլան այս Կիրակի առաւօտ (Վարդավառ) Փարիզի Հայոց եկեղեցւոյ մէջ կատարուելիք պատարագին եւ հոգեհանգստեան պաշտօնին ի յիշատակ մեր բիւրաւոր նահատակներուն, որոնց ոգեկոչումը պիտի ընէ բարձրաստիճան եկեղեցական մը :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Բ. խումբը կը մեկնի Օգոստոս չորսին, արձանագրուած պզտիկներու ծնողքներէն անոնք որ դեռ չեն լրացուցած վերջնական պայմանները, պէտք է շուտով ներկայանան 5 Րիւ Մէյրան, հեռ. Թրիւտէն 27 - 35 :



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾՆԱՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

Այրի Տիկին Թեւանեան եւ զաւակները՝ Ժագլին, Կիւրեղ եւ Կարապետ ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆԻ

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Յուլիս 20ին, Քլիշիք տը Փաախի մէջ :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երկուշաբթի (Յուլիս 25) ժամը 10·30ին, Փարիզի Ս · Յովհ · Մկրտիչ ե - կեղեցիին մէջ, ուրկէ մարմինը պիտի փո - խադրուի Պանեէօ – Փարիզէնի գերեզ - մանատունը :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

Պ · Կարապետ Բաղոսեան եւ զաւակնե - րը՝ Յակոբ եւ Արթօ, Տէր եւ Տիկին Յով - հաննէս Զըրըքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Բաղոսեան եւ զաւակ - ները, Այրի Տիկին Ազատնի Բաղոսեան եւ զաւակները, Այրի Տիկին Վարդանոյշ Բա - ղոսեան եւ զաւակները (Պուլկարիա), Տէր եւ Տիկին Կարապետ Բէհլիվանեան, Տէր եւ Տիկին Փիէր Ժառտինիէ եւ զաւա - կը, Տէր եւ Տիկին Վահրամ Զորմխեան եւ զաւակը, Խաչման Բալադեան եւ զա - ւակները, Տէր եւ Տիկին Մկրտիչ Իզմիր - եան, Այրի Տիկին Կատարինէ եւ զաւակ - ները, սրտի ցաւով կսկծով կը ծանուցա - նեն իրենց կնոջ, մօր, զոքանչ մօր, նե - րոջ եւ ազգականին՝

ՀԱՃԻ ՏՈՒՐԻԿ ԲԱՂՈՍԵԱՆԻ

(66 տարեկան), կսկծալի մահը, որ տե - ղի ունեցաւ իր բնակարանին մէջ, Յու - լիս 22ին :

Յուղարկաւորութիւնը պիտի կատար - ուի այս Երկուշաբթի առաւօտ ժամը 11 - ին, Ալֆորվիլի Հայոց եկեղեցին :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմ - բեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առա - ւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքա - պետարանի շքեղ սրահներուն մէջ :



## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ա - միսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշ - տօնեաներուն համար՝ որոնց կարգա - բացակայութիւնը զգալի կերպով կը դժ - ուարացնէ մնացողներուն առօրեայ աշ - խատանքը :

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդնե - րէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հանրին դիմել որեւէ թղթատարական գը - րասենեակ :

Ընթացիկ պարզ եւ ձրի գործո - ղութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տը - րամադրելի՝ հետեւեալ խորագիրով դե - ղին թուղթը · —

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION
(Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժա - նորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը :

Բացառաբար մեր խնդրանքը գործա - դրելու անկարելիութեան մէջ գտնուող բաժանորդներուն համար, հասցէի փո - փոխութեան ծախքն է՝ 2·50 Ն · Ֆ ·, կանխաւ վճարելի :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Խանասորի տարեդարձը կը տօնուի, Հ · Յ · Դ · Եօթնեղբայրեանի Կըրնոպլի ենթակոմիտէի նախաձեռնութեամբ դաշ - տահանդէսով մը :

31 Յուլիս, Կիրակի ամբողջ օրը Սէն Նիզիէի ճամբուն վրայի գեղեկին ծա - ռաստանին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին, տեղ - ւոյս կարող ուժերուն կողմէ :

Ճոխ պիւֆէ :

Բարձրախօսով պիտի նուագուին հայ - կական եղանակներ :

Անձրեւի պարագային կը յետաձգուի :

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

«Հերոսներու Օր»ուան առթիւ

Նախաձեռնութեամբ Հ · Յ · Դ · Լիոնի եւ Տէսինի կոմիտէներուն :

31 Յուլիս, Կիրակի ամբողջ օրը Տէսին, Կապրիյեօն սրճարանի ծառախիտ պարտէ - զին մէջ :

Գեղարուեստական բաժին, բարձրախօ - սին վրայ հայկական երգ ու նուագ :

Ճոխ պիւֆէ, շամփուրով խորոված, ա - ռատ ուտելիք եւ ըմպելիք, գիները դիւ - րամատչելի :

Կը խօսի ԸՆԿԵՐ Մ · ՄԻՐՁԷ :

Օրուան խօսնակ Ընկ · Կ · ՅՈՎԱԿԻՄԵԱՆ

Լիոնի հանրակառքը կը մեկնի Փլաս Կիշառէն ժամը 9·30ին, անձրեւի պա - րագային ապահով վայր :



Hotel Splendid - Laffrey (Isére) ՕԳՈՍՏՈՍ 1 – 31

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐ

1000 մեթր բարձրութեան վրայ, գեղա - տեսիլ լճի մը ափին, բոլոր յարմարու - թիւններով օժտուած մեծ պանդոկի մը մէջ : Խաղաղաշտ եւ լողանք : Խմբական պտոյտներ, դասախօսութիւններ եւ գե - ղարուեստական երեկոյթներ :

ՕՐԱԿԱՆ 8·50 Ն · Ֆ ·

Արձանագրութեանց համար դիմել Շա - բաթ օրերը՝ 17 Րիւ Պլէօ, կէսօրէ վերջ ժամը 2 – 6 :

ՆԻՍԻ խումբին համար արձանագրուիլ Օր · Շաքէ Գաբրիէլեանի մօտ, 19 Պուլվ · Մանեան, Նիս :

ԳԱՒԱՌ, Լիոն · — Պէրպէրեան Ժ. 39, Rue Dunoir LYON 3·

ՏԷՍԻՆ · — Լիւլէճեան, 16, Rue Coli

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ · — Ժ · Փիլիկեան, 8, Rue J. Vergnette

ՎԻԷՆ · — Կարապետեան Rue Mont Arnaud

ՄԱՐՍԷՅԼ · — Գըլըճեան, 18, Rue Thubaneau

Օր · ԱՆԱՀԻՏ ՄՈՒՐԱՏԵԱՆ · Պ · ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆԵԱՆ

Ամուսնացած

23 Յուլիս, 1960, Փարիզ

Կնքահայրութեամբ Պ · ՄԿՐՏԻՉ ԱԶՈՅ - ԵԱՆԻ :

Այս ուրախ առթիւ Տէր եւ Տիկին Գա - բրիէլ Վարդանեան կը նուիրեն · — 20ական Ն · Ֆ · Ս · Թէհլիրեան, Գ · Բա - լայեան եւ Յարութիւն Օնպաշեան սրահ - ներուն : 20 Ն · Ֆ · «Յառաջ»ին եւ 10 Ն · Ֆ · «Հայ-Բոյժ»ին :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Տիկին Մարի Ժամկոչ - եան կը փնտռէ իր եղբայրը՝ Պ · Սահակ Հաջի Յակոբեանը : Գիտցողներէն կը խնդրուի տեղեկացնել · —

VARTABEDIAN

1, Rue Bozer — Barjols (VAR)

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Բ · խումբը կը մեկնի Օգոստոս չորսին, արձանագրուած պզտիկներու ծնողքներէն անոնք որ դեռ չեն լրացուցած վերջնա - կան պայմանները, պէտք է շուտով ներ - կայանան 5 Րիւ Մէյրան, հեռ · Թրիտէն 27 – 35 :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

ԼԻՈՆ · — Հ · Յ · Դ · «Վարանդեան» կո - միտէն, ընդհ · ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20·30ին, Յոյներու սրահը :

Կարեւոր օրակարգ :

## ՊԱՏԱՐԱԳ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, պի - տի պատարագէ եւ քարոզէ Կաթ · պատ - ուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ · ՄԱՆՈՒԿԵԱՆ

Վալանսի եւ շրջանի Հայութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ արարողու - թեան եւ լսել Եպիսկոպոսին քարոզը :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խը - նամակալութիւնը պէտք ունի ուսանողու - հի մը, որ ստացած ըլլայ ֆրանսական երկրորդական կրթութիւն եւ կարենայ դասաւանդել վարժարանին մէջ : Բնակու - թիւն եւ սնունդ ապահովուած են :

Մանրամասնութեան համար դիմել ոը - նորէնութեան : 1, Պուլվ · տիւ Նոր, Լը Ռէնսի, Հեռ · 927–01,72 :

